Պրոլետարնե՛ր բոլոր յերկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒՍ. ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՅԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

I op.

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 14 (45)

ՀՍՍՀ ԿԳԿ հրատարակչություն — «Խորհրդ. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ—1938





ՀԿ(Բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒՍ. ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ
ԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 14—(54)

Հայկական ԽՍՀ ԿԳԿ Հրատարակչություն—
«ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»

ԵՐԵՎԱՆ— 1938

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ





# ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ԱՌԱՋԻՆ ՍԵՍԻԱՆ

1938 թվի հուլիսի 12-ը հայ ժողովրդի պատմության մեջ կմնա վորպես նրա պայծառ, ցնծալից որերից մեկը: Այդ որը Երևանում տեղի ունեցավ սոցիալիզմի մեծ խարտիայի— Ստալինյան Սահմանադրության հիման վրա ընտրված Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի անդրանիկ Սեսիայի բացումը:

«Մոսկվա» կինոթատրոնի հոյակապ դահլիճը, ուր տեղի ունեցան Սեսիայի նիստները, զարդարված էր տոնականորեն:

Ժամի ուղիղ 12-ն է: Կառավարության անդամները գրավում են իրենց տեղերը: Նրանց մեջ են ընկերներ Ա. Փիրուզյանը, Վ. Խվորոստյանը, Ռ. Վելիբեկովը, Բ. Մարտիրոսյանը, Գ. Հովհաննիսյանը և ուրիշները:

Օթյակում էին ընկերներ Գ. Հարությունյանը, Մ. Պապյանը, Խ. Հակոբջանյանը, Ս. Ղևոնդյանը, Ծ. Առուշանյանը, Լ. Հովսեփյանը, Հ. Գալստյանը և ուրիշները:

Դեպուտատ ընկ. Հրաչյա Գալստյանն առաջարկ է մտցնում առաջին Սեսիայի բացումը հանձնարարել ավագ դեպուտատ ընկ. Մովսես Մելիքի Հարությունյանին (Արագուն):

Դեպուտատների խանդավառ ծափերի տակ ընկեր Արագին բարձրանում է նախագահի ամբիոնը: Նրա ջերմ, պղպջուններով լի ճառը դեպուտատները լսում են լարված հետաքրքրությամբ: Եվ ամեն անգամ, երբ հռետորն արտասանում է մարդկության մեծ ազատարարի, կոմունիզմի հանճարեղ նախակարի— Իոսիփ Վիսսարիոնովիչ Ստալինի անունը,— դահլիճում նորից ու նոր ուժով պոռթկում է փոթորկալից, երկար ժամանակ չլռող ովացիան: Դահլիճում բոլոր կողմերից զանազան լեզուներով հնչում են ողջույնի ցնծագին բացականչությունները՝ ի պատիվ ընկեր Ստալինի:

Ընկեր Արագու ճառից հետո Սեսիան անցնում է Հայկական ԽՍՀ Գերագույն Խոր-



հրդի Նախագահի և Նախագահի տեղակալների ընտրությանը:

Դեպուտատ ընկեր Երեմ Խաչատրյանը Երևանի, Լենինականի, Արթիկի, Դուզքյանդի և Վաղարշապատի դեպուտատների խմբի անունից առաջարկում է Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի Նախագահ ընտրել Լենին-Ստալինի կուսակցության հարազատ զավակ, սոցիալիզմի գործին նվիրված մարտիկ, ՀԿ(բ)Կ Կենտկոմի երկրորդ քարտուղար, դեպուտատ ընկեր Խաչիկ Մխակի Հակոբջանյանին:

Սեսիան բուռն ծափահարությամբ է ընդունում այդ առաջարկը. միաձայն Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի նախագահ է ընտրվում ընկեր Հակոբջանյանը:

Գերագույն Խորհրդի Նախագահը գրավում է իր տեղը:

Ընկեր Հակոբջանյանն առաջարկ է մտցնում, Հայկական ԽՍՀ Սահմանադրության 26-րդ հոդվածի հիման վրա ընտրել Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի Նախագահի երկու տեղակալներ:

Ձայն է խնդրում դեպուտատ ընկեր Բագդիկ Ծերդանյանը: Երևանի, Կոտայքի, Ղամարլուի և Աշտարակի դեպուտատների

Ողջունում էին ընկերներ Գ. Հարությունյանը, Մ. Պապյանը, Խ. Հակոբջանյանը, Ս. Ղևոնդյանը, Ծ. Առուշանյանը, Լ. Հովսեփյանը, Հ. Գալստյանը և ուրիշները:

Դեպուտատ ընկ. Հրաչյա Գալստյանն առաջարկ է մտցնում առաջին Սեսիայի բացումը հանձնարարել ավագ դեպուտատ ընկ. Մովսես Մելիքի Հարությունյանին (Արագուն):

Դեպուտատների խանդավառ ծափերի տակ ընկեր Արագին բարձրանում է նախագահի ամբիոնը: Նրա ջերմ, զգացումներով լի ճառը դեպուտատները լսում են լարված հետաքրքրությամբ: Եվ ամեն անգամ, երբ հռետորն արտասանում է մարդկության մեծ ազատարարի, կոմունիզմի հանճարեղ նավավարի— Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի անունը,— դահլիճում նորից ու նոր ուժով պոռթկում է փոթորկալից, երկար ժամանակ չլռող ովացիան: Դահլիճում բոլոր կողմերից զանազան լեզուներով հնչում են ողջույնի ցնծագին բացականչությունները՝ ի պատիվ ընկեր Ստալինի:

Ընկեր Արագու ճառից հետո Սեսիան անցնում է Հայկական ԽՍՀ Գերագույն Խոր-



հրդի Նախագահի և Նախագահի տեղակալների ընտրությանը:

Դեպուտատ ընկեր Յերեմ Խաչատրյանը Յերևանի, Լենինականի, Արթիկի, Դուզքյանդի և Վաղարշապատի դեպուտատների խմբի անունից առաջարկում է Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի Նախագահ ընտրել Լենին-Ստալինի կուսակցության հարազատ զավակ, սոցիալիզմի գործին նվիրված մարտիկ, ՀԿ(բ)Կ Կենտկոմի քարտուղար, դեպուտատ ընկեր Խաչիկ Մխաքի Հակոբջանյանին:

Սեսիան բուռն ծափահարությամբ է ընդունում այդ առաջարկը. միաձայն Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի նախագահ է ընտրվում ընկեր Հակոբջանյանը:

Գերագույն Խորհրդի Նախագահը գրավում է իր տեղը:

Ընկեր Հակոբջանյանն առաջարկ է մտցնում, Հայկական ԽՍՀ Սահմանադրության 26-րդ հոդվածի հիման վրա ընտրել Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի Նախագահի երկու տեղակալներ:

Ձայն է խնդրում դեպուտատ ընկեր Բաղդիկ Ծերդանյանը: Յերևանի, Կոտայքի, Ղամարլուի և Աշտարակի դեպուտատների

խմբի անունից նա առաջարկ է մտցնում Հայկական ՍՍՀ Գերագույն Սովետի Նախագահի տեղակալ ընտրել ժողովրդի հարազատ դուստր, Յերևանի Մանկավարժական ինստիտուտի դասախոս, լուսավորության ճակատի յեռանդուն մարտիկ, անկուսակցական բոլշևիկ, դեպուտատ ընկեր Նվարդ Աղաջանի Խոջաեյնաթյանին:

Նախագահը քվեարկության է դնում այդ առաջարկը: Դեպուտատները միաձայն Հայկական ՍՍՀ Գերագույն Սովետի Նախագահի տեղակալ են ընտրում ընկեր Խոջաեյնաթյանին:

Բայազետի, Սևանի, Մարտունու, Բասարգեչարի և Ազիզբեկովի դեպուտատների խմբի անունից դեպուտատ ընկեր Սուրեն Հովհաննիսյանն առաջարկություն է մտցնում՝ Հայկական ՍՍՀ Գերագույն Սովետի Նախագահի տեղակալ ընտրել կոլտնտեսային կարգերի տոկուն մարտիկ, Զոդ գյուղի կոլտնտեսության նախագահի պոստից նորերս Բասարգեչարի շրջգործկոմի նախագահ առաջ քաշված, կուսակցության հարազատ զավակ, դեպուտատ ընկեր Բայրամ Ալի-օղլի Կամանովին:

Դեպուտատները միահամուռ կերպով ընդունում են այդ առաջարկությունը, Հայ-



կական ՍՍՀ Գերագույն Սովետի Նախագահի տեղակալ է ընտրվում ընկեր Կամանովը:

Դեպուտատ ընկեր Սմբատ Թունյանն առաջարկություն է մտցնում Սեսիայի աշխատանքների ռեգլամենտի վերաբերյալ: Սեսիան ընդունում է ռեգլամենտը: Այնուհետև հաստատում է օրակարգը:

1. Հայկական ՍՍՀ Գերագույն Սովետի մանդատային հանձնաժողովի ընտրությունը.

2. Հայկական ՍՍՀ Գերագույն Սովետի մշտական հանձնաժողովների մասին.

3. Հայկական ՍՍՀ Գերագույն Սովետի Բյուջետային Հանձնաժողով ընտրելու մասին:

4. Հայկական ՍՍՀ Սահմանադրության մի քանի հոդվածների մեջ՝ Հայկական ՍՍՀ Կենտգործկոմի և Ժողկոմխորհի ընդունած վորոշումների կապակցությամբ փոփոխություններ և լրացումներ մտցնելը:

5. Դեպուտատների՝ դեպուտատական պարտականությունների կատարման հետ կապված ծախսերի վճարման մասին.

6. Հայկական ՍՍՀ Գերագույն Սովետի Նախագահության ընտրությունը.

7. Հայկական ՍՍՀ կառավարության—

ժողովրդական Կոմիսարների Խորհրդի կազմումը:

Կալինինոյի, Ստեփանավանի, Կիրովականի, Ազիզբեկովի և Շամշադինի դեպուտատների խմբի անունից դեպուտատ ընկեր Դրեպսյան առաջարկություն է մտցնում Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի դեպուտատների լիազորությունն ստուգելու համար ընտրել մանդատային հանձնաժողով:

Սեսիան միաձայն ընտրում է Մանդատային Հանձնաժողով, բաղկացած 9 հոգուց, ընկ. Մինաս Դիլանյանի նախագահությամբ:

Դեպուտատ ընկեր Աղասի Սարգսյանն առաջարկություն է մտցնում վողջույնի հեռագիր ուղարկել ժողովուրդների մեծահանճար առաջնորդ, համաժողովրդական առաջին դեպուտատ ընկեր Ստալինին: Դահլիճը վոտքի կանգնած՝ փոթորընդոստ ծափերով և հզորաձայն ուռաներով, վողջույնի ցնծալից բացականչություններով է ընդունում այդ առաջարկությունը:

Սեսիան բացառիկ ջերմ մթնոլորտում ընդունում է ընկեր Ստալինին ուղղված վողջույնի հեռագիրը:

Սեսիան խանդավառությամբ վորոշում է



վողջույնի հեռագիր ուղարկել նաև հայ ժողովրդի սիրելի ընտրյալներ, խորհրդային պետության ականավոր գործիչներ, մեծ Ստալինի մերձավոր զինակիցներ ընկերներ Մոլոտովին ու Միկոյանին:

Դրանով փակվում է Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի առաջին Սեսիայի առաջին նիստը:

***

Հունիսի 13-ին, առավոտյան ժամը 11-ին «Մոսկվա» կինո դահլիճում սկսվեց Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի առաջին Սեսիայի երկրորդ նիստը: Նախագահության սեղանի մոտ են Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի Նախագահ ընկեր Խ. Մ. Հակոբջանյանը, Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի Նախագահի տեղակալներ ընկերներ Բ. Ա. Կամալովը և Ն. Ա. Խոջաեյնաթյանը: Բեմի ձախ կողմում, օթյակում տեղ են գրավում Հայկական ԽՍՀ կառավարության անդամներ՝ ընկ. ընկ. Ա. Փիրուզյանը, Վ. Խլոբոստյանը, Ռ. Վելիբեկովը, Ն. Կոնդակովը, Բ. Մարտիրոսյանը, Հ. Աբաջյանը, Ա. Բունյաթյանը, Գ. Հովհաննիսյանը, Բ. Աստվածատրյանը և ուրիշները: Աջակողմյան օթյակում են ընկերներ Գ. Հարությունյանը, Մ. Պապյա-

նը, Մ. Ղևոնդյանը, Ծ. Աստուչանյանը, Լ. Հովսեփյանը, Հ. Գալստյանը, Մ. Միքայելյանը, Սաղաթելյանը և ուրիշները:

Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի Նախագահ ընկ. Խ. Մ. Հակոբջանյանն անցնում է Սեսիայի օրակարգի յերկրորդ հարցին՝ Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի մշտական հանձնաժողովներ կազմելու հարցի քննությանը:

Դեպուտատ ընկ. Մամեդ Իսկանդարովը Յերևանի, Վեդու, Ղարաբաղլարի, Ամասիայի և Թալինի շրջանների դեպուտատների խմբի անունից առաջարկ է մտցնում՝ ստեղծել Որենսդրական Նախադծերի մշտական գործող Հանձնաժողով, վորը պետք է նախապես մշակի Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի քննությանը դրվող այս կամ այն օրենքը:

Նախագահող ընկեր Խ. Մ. Հակոբջանյանը քվեարկության է դնում այդ առաջարկը:

Սեսիան միաձայն վորոշում է՝ ընտրել Որենսդրական Նախադծերի հանձնաժողով՝ 9 հոգուց:

Սեսիան Որենսդրական Նախադծերի Հանձնաժողովի նախագահ է ընտրում ընկեր Հաբեթ Թորոսի Աբաջյանին— դեպու-



տատ Ալխանակի շրջանի Գյուլլիջայի ընտրական օկրուգից:

Ապա Սեսիան ընտրում է մշտապես գործող Բյուջետային Հանձնաժողով, ընկ. Սերգեյ Առաքելյանի նախագահությամբ:

Այնուհետև Սեսիան լսում է Մանդատային Հանձնաժողովի նախագահ, դեպուտատ ընկեր Մ. Հ. Դիլանյանի զեկուցումը:

Ընկեր Դիլանյանը Սեսիային հաղորդում է, վոր Մանդատային Հանձնաժողովը քննելով յուրաքանչյուր դեպուտատի վերաբերյալ փաստաթղթերը, գտավ, վոր 256 դեպուտատների ընտրությունն անց է կացված Հայկական ԽՍՀ Սահմանադրության և «Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրության» լրիվ համապատասխան:

***

Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի հուլիսի 13-ի յերեկոյան—յերրորդ նիստում լսվեց դեպուտատ ընկեր Հր. Գալստյանի զեկուցումը Հայկական ԽՍՀ Սահմանադրության մի քանի հոդվածները Հայկական ԽՍՀ Կենտգործկոմի ու Ժողկոմխորհի ընդունած վորոշումների կապակցությամբ փոփոխելու և լրացնելու հարցի մասին:

Գերագույն Խորհրդի Սեսիան միաձայն

ընդունում է հատուկ վորոշում Հայկական ԽՍՀ Սահմանադրության մի քանի հոդվածները փոփոխելու և լրացնելու մասին:

Այնուհետև օրակարգի 5-րդ հարցի— դեպուտատների դեպուտատական պարտականությունների կատարման հետ կապված ծախսերի հատուցման մասին դեպուտատ ընկեր Հ. Գալստյանի տված զեկուցումից հետո Սեսիան ընդունում է հետևյալ վորոշումը.

Սահմանել Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի դեպուտատների համար, դեպուտատական պարտականությունների կատարման հետ կապված ծախսերի հատուցում՝ ամսական 500- ական ռուբլի:

Սեսիան անցնում է օրակարգի 6-րդ հարցի քննարկմանը՝ Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի Նախագահության ընտրությանը:

Ավագների Խորհրդի անունից ելույթ է ունենում դեպուտատ ընկեր Սաղաթելյանը:

Շարադրելով այն նկատառումները, վորոնք ավագների Խորհրդի կարծիքով պետք է դրվեն Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի Նախագահության ընտրությունների հիմքում, դեպուտատ ընկեր Սաղաթելյանը հրապարակում է Հայկական ԽՍՀ Գերա-



գույն Խորհրդի Նախագահության կազմում առաջադրված թեկնածուների ազգանունները: Յուրաքանչյուր թեկնածուի անհատական քննարկությամբ Սեսիան միաձայն ընտրում է Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի Նախագահությունը հետևյալ կազմով.

## ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ

1. Մացակ Պետրոսի ՊԱՊՅԱՆ— դեպուտատ Յերևան քաղաքի Նար-Դոսի ընտրական օկրուգից:

## ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀԻ ՏԵՂԱԿԱԼՆԵՐ

2. Սիմակ Մկրտչի ՍԱՀԱԿՅԱՆ— դեպուտատ Յերևան քաղաքի Կնունյանցի ընտրական օկրուգից:

3. Հաբեթ Թորոսի ԱԲԱՋՅԱՆ— դեպուտատ Սպիտակի շրջանի Գյուլլիջայի ընտրական օկրուգից:

## ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ

4. Հրաչյա Արշակի ԳԱԼՍՏՅԱՆ — դեպուտատ Հոկտեմբերյանի շրջանի Ավանայի ընտրական օկրուգից:

## ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ԱՆԴԱՄՆԵՐ

5. Գրիգոր Արտեմի ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ— դեպուտատ Երևան քաղաքի Սպանդարյան ընտրական օկրուգից:

6. Սերյոժա Արտեմի ԻՍՐԱՅԵԼՅԱՆ— դեպուտատ Լենինական քաղաքի քաղաքամերձ ընտրական օկրուգից:

7. Սուրեն Ազատի ՄԻՔԱՅԵԼՅԱՆ— դեպուտատ Ստեփանավանի շրջանի Ագարակի ընտրական օկրուգից:

8. Ցուղաբեր Կարապետի ԱՎԵՏԻՍՅԱՆ— դեպուտատ Երևան քաղաքի գործարանային ընտրական օկրուգից:

9. Սուքիաս Գևորգի ԽԱՉԱՏՐՅԱՆ— դեպուտատ Ալավերդու շրջանի Դսեղի ընտրական օկրուգից:

10. Մամեդ Սալման-օղլի ԻՍԿՅԱՆԴԱՐՈՎ, — դեպուտատ Վեդու շրջանի Արարատի ընտրական օկրուգից:

11. Դմիտրի Ֆրոլովիչ ՄԱԿՇԱՆՈՎ—դեպուտատ Երևան քաղաքի Արարատի ընտրական օկրուգից:

12. Դիմիտրի Իվանովիչ ԲԱԴԵՅՆՈՎ— դեպուտատ Դուզքյանդի շրջանի Ախուրիկի ընտրական օկրուգից:

13. Ռուբեն Նիկիտի ԳՅԱՆՋՈՒՆՑՅԱՆ—



դեպուտատ Երևան քաղաքի Ղուկասյանի ընտրական օկրուգից:

Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի Նախագահ ընկեր Խ. Մ. Հակոբջանյանը հրապարակում է Հայկական ԽՍՀ Ժողկոմխորհի Նախագահ, դեպուտատ ընկեր Ա. Փիրուզյանի հայտարարությունը՝

«Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի Նախագահ ընկեր Հակոբջանյանին:

Հայկական ԽՍՀ Սահմանադրության 47-րդ հոդվածի համապատասխան և այն կապակցությամբ, որ Հայկական ԽՍՀ կառավարության կազմելու հարցը դրված է Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի քննությանը, Ժողովրդական Կոմիսարների Խորհուրդն իր պարտականությունը համարում է սպառված և Գերագույն Խորհրդի առաջ վայր է դնում իր լիազորությունը:

Հայկական ԽՍՀ Ժողովրդական Կոմիսարների Խորհուրդը խնդրում է ձեզ՝ այդ մասին հայտնել ի գիտություն Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդին:

Հայկական ԽՍՀ Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի Նախագահ՝

Ա. ՓԻՐՈՒԶՅԱՆ

13 հուլիսի, 1938 թիվ»:

Սեսիան անցնում է Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի նախագահի հաստատության քննարկմանը:

Դեպուտատ ընկեր Մ. Ուլոյանի առաջարկությամբ Սեսիան միաձայն ընդունում է հետևյալ վորոշումը.

«Հայկական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետության Գերագույն Խորհուրդը վստահություն է հայտնում Հայկական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետության Ժողովրդական Կոմիսարների Խորհրդին և հանձնարարում է Հայկական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետության Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի նախագահ ընկ. Ա. Փիրուզյանին՝ առաջարկություն ներկայացնել կառավարության կազմի մասին, հաշվի առնելով մտքերի փոխանակության ընթացքում դեպուտատների արած քննադատական դիտողությունները»:

***

Հուլիսի 14-ին, ժամը 5-ին տեղի ունեցավ Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի Սեսիայի 4-րդ նիստը:

Սեսիան անցնում է Հայկական ԽՍՀ Կառավարության — Հայկական ԽՍՀ Ժողովրդական Կոմիսարների Խորհուրդ կազմելուն:





Դեպուտատ Ա. Ս. Փիրուզյանը Գերագույն Խորհրդի քննարկմանն է ներկայացնում Հայկական ԽՍՀ Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի կազմը: Իր ճառում դեպուտատ Ա. Ս. Փիրուզյանը հաղորդում է Սեսիային, վոր իր կողմից լիովին հաշվի յեն առնված առանձին ժողկոմատների գործունեյության մասին Սեսիայում դեպուտատների կողմից արված դիտողությունները: Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի առաջին Սեսիան անհատական քվեարկությամբ միաձայն կազմում է Հայկական ԽՍՀ Կառավարություն — Հայկական ԽՍՀ Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի հետևյալ կազմը.—

Հայկական ԽՍՀ Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի նախագահ — Արամ Սերգեյի ՓԻՐՈՒԶՅԱՆ:

Հայկական ԽՍՀ Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի նախագահի տեղակալ — Ռիզա խալիլ-ողլի ՎԵԼԻԲԵԿՈՎ:

Պետական Պլանային Հանձնաժողովի նախագահ — Արմենակ Կյուրեղի ՇԵԿՈՅԱՆ:

Ներքին Գործերի ժողովրդական կոմիսար — Վիկտոր Վասիլևիչ ԽՎՈՐՈՍՏՅԱՆ:

Հողագործության ժողովրդական կոմի-

*սար* — Հայկազ Հովհաննեսի ՄԱՐՋԱՆՅԱՆ:

*Մննդարդյունաբերության ժողովրդական կոմիսար* — Նիկոլայ Խաչատրի ՂՈՒԿԱՍՅԱՆ:

*Թեթև արդյունաբերության ժողովրդական կոմիսար* — Գուրգեն Հակոբի ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ:

*Լուսավորության ժողովրդական կոմիսար* — Բալաբեկ Գրիգորի ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ:

*Առողջապահության ժողովրդական կոմիսար* — Բաբկեն Աշոտի ԱՍՏՎԱԾԱՏՐՅԱՆ:

*Ֆինանսների ժողովրդական կոմիսար* — Արտավազդ Ավագի ԲՈՒՆԻԱԹՅԱՆ:

*Առևտրի ժողովրդական կոմիսար* — Արտաշես Աբրահամի ԱԲՐԱՀԱՄՅԱՆ:

*Տեղական արդյունաբերության ժողովրդական կոմիսար* — Ռուբեն Բագրատի ԱԶԻԶԲԵԿՅԱՆ:

*Անտառային արդյունաբերության ժողովրդական կոմիսար* — Գուրգեն Տիգրանի ԳԵՎՈՐԳՅԱՆ:

*Արդարադատության ժողովրդական կոմիսար* — Սաֆար Հյուսեյին Զադե ԱԼԻ-ՄԱՄԵԴՈՎ:

*Կոմունալ տնտեսության ժողովրդական կոմիսար* — Ավետիս Թադևոսի ՄՈՒՐԱԴՅԱՆ:



*Սոցիալական ապահովության ժողովրդական կոմիսար* — Զորայեր Ղուկասի ԳԱԼԸՍՏՅԱՆ:

*Հայկական ԽՍՀ Ժողկոմխորհին կից Արվեստի վարչության պետ* — Գարեգին Հակոբի ԱՂԲԱԼՅԱՆ:

*ԽՍՀՄ Կապի ժողովրդական կոմիսարիատի Հայկական ԽՍՀ լիազոր* — Յեղիշ Ղահրամանի ՀՈՎՍԵՓՅԱՆ:

*ԽՍՀՄ Մթերումների ժողովրդական կոմիսարիատի Հայկական ԽՍՀ լիազոր* — Աղասի Յենոքի ՉԱՐՉՈՂԼՅԱՆ:

*Օրակարգի հարցերն սպառված են: Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի նախագահ ընկեր Մաչիկ Հակոբջանյանն ընդհանուր ծափահարությունների ներքո Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի առաջին սեսիան հայտարարում է փակված: Դահլիճում նոր թափով որոտում է բուռն ովացիան: Դեպուտատները ոտքի կանգնած՝ ողջունում են աշխատավոր մարդկության մեծահանճար առաջնորդ, համաժողովրդական դեպուտատ, թանկագին ընկեր* Ստալինին: *Թնդում է դեպուտատների հզոր բազմաձայն ուռան:*

— *Կեցցե՛ Ստալինյան Սահմանադրությունը:*

*Կեցցե՛ մեծ* ՍՏԱԼԻՆԸ:

# ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՅԵՎ ԱՆԿՈՒՍԱԿՑԱԿԱՆՆԵՐԻ ՍՏԱԼԻՆՅԱՆ ԲԼՈԿԻ ՆՈՐ ՀԱՂԹԱՆԱԿԸ

*Ավարտվեցին միութենական և ավտոնոմ հանրապետությունների Գերագույն Խորհուրդների ընտրությունները: Այդ ընտրություններում կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկը տարավ նոր, փայլուն հաղթանակ:*

*Խորհրդային Միության ժողովուրդները կրկին անգամ ամբողջ աշխարհի առջև ցուցադրեցին իրենց բարոյական - քաղաքական անխորտակելի միասնությունը, իրենց անսահման նվիրվածությունը* Լենինի – Ստալինի *գործին, իրենց ջերմ սերը դեպի աշխատավորության առաջնորդ, ուսուցիչ և բարեկամ ընկեր* Ստալինը:

*Գերագույն Խորհուրդների առաջին դեպուտատ ընտրված է համաժողովրդական թեկնածու ընկեր* Ի. Վ. Ստալինը: *Գերագույն Խորհուրդների դեպուտատներ են ընտրված ընկեր* Ստալինի *մերձավոր զինա-*



*կիցներ՝ ընկերներ* Վ. Մ. Մոլոտովը, Լ. Մ. Կագանովիչը, Կ. Յե. Վորոշիլովը, Մ. Ի. Կալինինը, Ա. Ա. Անդրեևը, Ն. Ի. Յեժովը, Ա. Ի. Միկոյանը, Ա. Ա. Ժդանովը:

*Առանց բացառության բոլոր միութենական և ավտոնոմ հանրապետություններում Գերագույն Խորհուրդների դեպուտատներ են ընտրված սոցիալիստական հայրենիքի արժանավոր զավակներն ու դուստրերը, վորոնք կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկի թեկնածուներն են:*

*Ստորև հրապարակում ենք քվեարկության արդյունքները ըստ յուրաքանչյուր միութենական հանրապետության, վորոնք կազմված են Կենտրոնական ընտրական հանձնաժողովների հաղորդագրությունների հիման վրա:*

### *ՌԽՖՍՀ*

*ՌԽՖՍՀ-ում կա ՌԽՖՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների* 93·927 *ընտրական տեղամաս և* 727 *ընտրական օկրուգ: Օկրուգային ընտրական հանձնաժողովներն արձանագրել են ՌԽՖՍՀ Գերագույն Խորհրդի բոլոր* 727 *դեպուտատների ընտրությունը:*

*ՌԽՖՍՀ-ում ցուցակագրված են յեղել ՌԽՖՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների ձայնի իրավունք ունեցող* 60·368·858

մարդ: Ընտրողների այդ թվից քվեարկությանը մասնակցել են 59·936·715 մարդ, որը կազմում է ձայնի իրավունքից օգտվող քաղաքացիների ընդհանուր թվի 99,3 տոկոսը:

ՌՍՖՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների բոլոր ընտրական օկրուգներում կոմունիստների և անկուսակցականներիստալինյան բլոկի թեկնածուների օգտին ձայն են տվել 59·542·993 մարդ, որը կազմում է քվեարկությանը մասնակցածների ընդհանուր թվի 99,3 տոկոսը:

ՌՍՖՍՀ Գերագույն Խորհրդում ընտրված 727 դեպուտատներից 568 կոմունիստներ են և 159՝ անկուսակցականներ: Կին դեպուտատներ՝ 157:

## ՈՒԿՐԱԻՆԱԿԱՆ ԽՍՀ

Ընդամենը Ուկրաինական ԽՍՀ-ում կա 21·979 ընտրական տեղամաս և 304 ընտրական օկրուգ: Օկրուգային ընտրական հանձնաժողովներն արձանագրել են բոլոր 304 դեպուտատների ընտրությունը:

Ուկրաինական ԽՍՀ-ում ցուցակագրված է յեղել Ուկրաինական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրություններին ձայնի իրավունք ունեցող 17·536·486 մարդ: Ընտրական օկրուգների վերջնական տվյալներով, ընտրող-



ների այդ թվից քվեարկությանը մասնակցել են 17·467·909 մարդ, որը կազմում է ձայնի իրավունքից օգտվող քաղաքացիների ընդհանուր թվի 99,62 տոկոսը:

Ուկրաինական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների բոլոր ընտրական օկրուգներում կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկի թեկնածուների օգտին ձայն են տվել 17·387·683 մարդ, որը կազմում է քվեարկածների թվի 99,55 տոկոսը:

## ԲԵԼՈՌՈՒՍԱԿԱՆ ԽՍՀ

Ընդամենը Բելոռուսական ԽՍՀ-ում կա Բելոռուսական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների 3878 ընտրական տեղամաս և 273 ընտրական օկրուգ: Օկրուգային ընտրական հանձնաժողովներն արձանագրել են բոլոր 273 դեպուտատների ընտրությունը:

Ձայների վերջնական հաշվով Բելոռուսական ԽՍՀ բոլոր օկրուգներում Բելոռուսական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրություններին ձայնի իրավունք ունեցող 3·040·710 ընտրողների ընդհանուր թվից քվեարկությանը մասնակցել են 3·030·148 մարդ, որը կազմում է ընտրողների ընդհանուր թվի 99,65 տոկոսը:

Բելոռուսական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների բոլոր ընտրական օկրուգներում կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկի թեկնածուների օգտին ձայն են տվել 3·005·609 մարդ, որը կազմում է քվեարկությանը մասնակցածների ընդհանուր թվի 99,19 տոկոսը:

## ԱԴՐԲԵՋԱՆԱԿԱՆ ԽՍՀ

Ընդամենն Ադրբեջանական ԽՍՀ-ում կա Ադրբեջանական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների 2692 ընտրական տեղամաս և 310 ընտրական օկրուգ:

Ձայների վերջնական հաշվով, Ադրբեջանական ԽՍՀ բոլոր օկրուգներում Ադրբեջանական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրություններին ձայնի իրավունք ունեցող մեկ միլիոն 572·346 ընտրողների ընդհանուր թվից քվեարկությանը մասնակցել են մեկ միլիոն 562·396 մարդ, որը կազմում է ընտրողների ընդհանուր թվի 99,36 տոկոսը:

Ադրբեջանական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների բոլոր ընտրական օկրուգներում կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկի թեկնածուների օգտին ձայն են տվել 1·556·012 մարդ, որը կազմում է քվեարկությանը մասնակցածնե-



րի ընդհանուր թվի 99,59 տոկոսը:

Օկրուգային ընտրական հանձնաժողովների տվյալներով, արձանագրված է բոլոր 310 դեպուտատների ընտրությունը: Ընտրված 310 դեպուտատներից 231 կոմունիստներ են և 79 անկուսակցականներ: Կին դեպուտատներ — 71:

## ՎՐԱՑԱԿԱՆ ԽՍՀ

Վրացական ԽՍՀ-ում ընդամենը կա Վրացական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների 2932 ընտրական տեղամաս և 237 ընտրական օկրուգ:

Օկրուգային ընտրական հանձնաժողովների տվյալներով, արձանագրվել է բոլոր 237 դեպուտատների ընտրությունը:

Վրացական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրություններին ձայնի իրավունք ունեցող 1·898·041 ընտրողների ընդհանուր թվից քվեարկությանը մասնակցել են մեկ միլիոն 883·608 ընտրող, որը կազմում է ձայնի իրավունքից օգտվող քաղաքացիների ընդհանուր թվի 99,2 տոկոսը:

Վրացական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների բոլոր ընտրական օկրուգներում կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկի թեկնածուների օգտին ձայն են տվել 1·876·391 մարդ, որը

կազմում է քվեարկությանը մասնակցածների ընդհանուր թվի 99,6 տոկոսը:

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ

Ընդամենը Հայկական ՍՍՀ-ում կա 1204 ընտրական տեղամաս և 256 ընտրական օկրուգ, որտեղ ցուցակագրված են Հայկական ՍՍՀ Գերագույն Սովետի ընտրությունների ձայնի իրավունք ունեցող 611·649 մարդ: Օկրուգային ընտրական հանձնաժողովների տվյալներով, ընտրողների այդ թվից քվեարկությանը մասնակցել են 605 հազար 907 մարդ, որը կազմում է ձայնի իրավունքից օգտվող քաղաքացիների ընդհանուր թվի 99,06 տոկոսը: Հայկական ՍՍՀ Գերագույն Սովետի ընտրությունների բոլոր ընտրական օկրուգներում կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուների օգտին ձայն են տվել 603 հազար 469 մարդ, որը կազմում է քվեարկությանը մասնակցածների ընդհանուր թվի 99,6 տոկոսը:

Բոլոր 256 օկրուգներում օկրուգային ընտրական հանձնաժողովների կողմից արձանագրված է Հայկական ՍՍՀ Գերագույն Սովետի 256 դեպուտատների ընտրությունը: Ընտրված 256 դեպուտատներից 156 կոմունիստներ են և 100 անկուսակցականներ:



կին դեպուտատներ — 65, տղամարդիկ — 191:

## ԹՈՒՐՔՄԵՆԱԿԱՆ ՍՍՀ

Ընդամենը Թուրքմենական ՍՍՀ-ում կա Թուրքմենական ՍՍՀ Գերագույն Սովետի ընտրությունների 1220 ընտրական տեղամաս և 226 ընտրական օկրուգ:

Օկրուգային ընտրական հանձնաժողովները արձանագրել են բոլոր 226 դեպուտատների ընտրությունը:

Թուրքմենական ՍՍՀ Գերագույն Սովետի ընտրություններին ձայնի իրավունք ունեցող 655·722 ընտրողների ընդհանուր թվից քվեարկությանը մասնակցել են 652·763 ընտրող, որը կազմում է ձայնի իրավունքից օգտվող քաղաքացիների ընդհանուր թվի 99,55 տոկոսը:

Թուրքմենական ՍՍՀ Գերագույն Սովետի ընտրությունների բոլոր ընտրական օկրուգներում կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկի թեկնածուների օգտին ձայն են տվել 651·213 մարդ, որը կազմում է քվեարկությանը մասնակցածների ընդհանուր թվի 99,8 տոկոսը:

## ՈՒԶԲԵԿԱԿԱՆ ՍՍՀ

Ընդամենն Ուզբեկական ՍՍՀ-ում կա Ուզբեկական ՍՍՀ Գերագույն Սովետի ընտ-

րությունների 5104 ընտրական տեղամաս և 395 ընտրական օկրուգ: Օկրուգային ընտրական հանձնաժողովները ցուցակագրել են բոլոր 395 դեպուտատների ընտրությունը:

Ուզբեկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրություններին ձայնի իրավունք ունեցող 3·437·225 ընտրողների ընդհանուր թվից քվեարկությանը մասնակցել են 3·366·375 ընտրող, որը կազմում է ձայնի իրավունքից օգտվող քաղաքացիների ընդհանուր թվի 97,93 տոկոսը:

Ուզբեկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների բոլոր ընտրական օկրուգներում կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկի թեկնածուների օգտին ձայն են տվել 3·352·081 մարդ, կամ քվեարկությանը մասնակցածների 99·57 տոկոսը:

## ՏԱՋԻԿԱԿԱՆ ԽՍՀ

Ընդամենը Տաջիկական ԽՍՀ-ում կա Տաջիկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների 1520 ընտրական տեղամաս և 282 ընտրական օկրուգ:

Ձայնի իրավունք ունեցող 764·483 ընտրողների ընդհանուր թվից Տաջիկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրություններին քվեարկությանը մասնակցել են 760·606



մարդ, որը կազմում է ձայնի իրավունքից օգտվող քաղաքացիների ընդհանուր թվի 99,5 տոկոսը:

Տաջիկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների բոլոր ընտրական օկրուգներում կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկի թեկնածուների օգտին ձայն են տվել 757·924 մարդ, որը կազմում է քվեարկությանը մասնակցածների ընդհանուր թվի 99,64 տոկոսը:

Օկրուգային ընտրական հանձնաժողովները ցուցակագրել են Տաջիկական ԽՍՀ Գերագույն Խորհրդի բոլոր 282 դեպուտատների ընտրությունը: Ընտրված 282 դեպուտատներից 84-ը կին են, 189— տղամարդ:

## ՂԱԶԱԽԱԿԱՆ ԽՍՀ

Ընդամենը Ղազախական ԽՍՀ-ում կա Ղազախական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների 300 ընտրական օկրուգ:

Օկրուգային ընտրական հանձնաժողովները արձանագրել են բոլոր 300 դեպուտատների ընտրությունը:

Ձայնի իրավունք ունեցող 2·987·846 ընտրողների ընդհանուր թվից Ղազախական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրություններին քվեարկությանը մասնակցել են 2 միլիոն 963·033 ընտրող, որը կազմում է

ձայնի իրավունքից օգտվող քաղաքացիների ընդհանուր թվի 99,2 տոկոսը։

Ղազախական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների բոլոր ընտրական օկրուգներում կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկի թեկնածուների օգտին ձայն են տվել 2·948·868 մարդ, վորը կազմում է քվեարկածների թվի 99,5 տոկոսը։

## ԿԻՐԳԻԶԱԿԱՆ ԽՍՀ

Ընդամենը Կիրգիզական ԽՍՀ-ում կա Կիրգիզական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրությունների 1525 ընտրական տեղամաս և 284 ընտրական օկրուգ։

Օկրուգային ընտրական հանձնաժողովները ցուցակագրել են բոլոր 284 դեպուտատների ընտրությունը։

Ձայնի իրավունք ունեցող 793·966 ընտրողների ընդհանուր թվից Կիրգիզական ԽՍՀ Գերագույն Խորհրդի ընտրություններին քվեարկությանը մասնակցել են 779·873 ընտրող, վորը կազմում է ձայնի իրավունքից օգտվող քաղաքացիների ընդհանուր թվի 98,23 տոկոսը։

Կիրգիզական ԽՍՀ Գերագույն Խորհրդի



ընտրությունների բոլոր ընտրական օկրուգներում կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկի թեկնածուների օգտին ձայն են տվել 772·904 մարդ, վորը կազմում է քվեարկությանը մասնակցածների ընդհանուր թվի 99,1 տոկոսը։

# ՄՈՏԻԿ ԺԱՄԱՆԱԿՈՒՄ ԱՇԽԱՏԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ ԱՆՑԿԱՑՎԵԼԻՔ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՈՐԻՆԱԿԵԼԻ ԹԵՄԱՆԵՐԸ

## 1. ՅԵՐՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԻ (ԱՌԱՋԻՆ ՏԱՐՎԱ ԲԱԺԻՆ) ՊԵՏԱԿԱՆ ՓՈԽԱՌՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Պետական փոխառությունների նպատակներն ու խնդիրները ԽՍՀՄ-ում և կապիտալիստական յերկրներում: Խորհրդային փոխառությունների խոշորական ժողովրդական բնույթը: Պետական փոխառությունը — ԽՍՀՄ արդյունաբերության, տրանսպորտի, գյուղատնտեսության, ֆինանսների ամրապնդման և յերրորդ հնգամյակի իրագործման հզոր զենք: Պետական փոխառությունների դերը մեր սոցիալիստական հայրենիքի պաշտպանական հզորությունը բարձրացնե-*



*լու գործում: Պետական փոխառությունը և յերկրի կուլտուրական շինարարությունը: Փոխառության բաժնեգրման պայմանները:*

## 2. ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՅԵՎ ԱՎՏՈՆՈՄ ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՈՒՐԴՆԵՐԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ

*Միութենական և ավտոնոմ հանրապետությունների կենտրոնական ընտրական հանձնաժողովների հաղորդագրությունները ընտրությունների արդյունքների մասին: Կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկի նոր, փայլուն հաղթանակը: Դեպուտատների կազմը: Ընտրությունների արդյունքները — խորհրդային ժողովրդի բարոյական - քաղաքական միասնության,* Լենինի - Ստալինի *կուսակցության շուրջն աշխատավորների համախմբվածության հուժկու ցուցադրումը:*

## 3. ԼԵՆԻՆԻ - ՍՏԱԼԻՆԻ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ — ԽՍՀՄ-ՈՒՄ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՂՆ ՈՒ ՂԵԿԱՎԱՐԸ

*Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) կուսակցությունը — աշխատա-*

վորության առաջավոր ջոկատ սոցիալիստական կարգի ամրապնդման ու պաշտպա-ման համար նրանց պայքարում, ԽՍՀՄ աշխատավորների բոլոր կազմակերպությունների ղեկավար կորիզ: Ժողովրդական մասսաների հետ բոլշևիկների կուսակցության կապերի անխախտ ամրությունը:

Բոլշևիկյան կուսակցության լենինյան-ստալինյան միասնությունը և կուսակցական շարքերի յերկաթե կարգապահությունը, հավատարմությունը լենինիզմին, անհաշտությունը դեպի ժողովրդի բոլոր թշնամիները, անկուսակցական մասսաների հետ կուսակցության անխզելի կապը — համԿ(բ)Կ հզորության ու անպարտելիության յերաշխիք:

Ընկեր Ստալինը — աշխարհում միակ իսկական դեմոկրատական Սահմանադրության ստեղծող: Ընկեր Ստալինը — ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի և միութենական ու ավտոնոմ խորհրդային սոցիալիստական հանրապետությունների Գերագույն Խորհուրդների առաջին դեպուտատ:



## 4. ԽՍՀ ՄԻՈՒԹՅԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԻ ՎՈՐՈՇՈՒՄԸ 1938 ԹՎԻ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ՄԱՍԻՆ ՅԵՎ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ԿԱՄՊԱՆԻԱՅԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ

ԽՍՀ Միության Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի վորոշումը 1938 թվի բերքը հավաքելու մասին:

Պայքար «Հանուն ամեն տարի 7—8 միլիարդ փութ հացահատիկի» ստալինյան լոզունգի կենսագործման համար: Վնասարարության ջախջախումը գյուղատնտեսության բնագավառում և 1938 թվին բարձր բերք ստանալու նախադրյալների ստեղծումը: 1938 թվի բերքի առանձնահատկությունները: Անցյալ տարվա բերքահավաքի կամպանիայի սխալները հաշվի առնելու և այս տարի դրանց կրկնումը թույլ չտալու անհրաժեշտությունը: Ուժերի ճիշտ դասավորումը և գործի հստակ կազմակերպումը, մեխանիկական ու կենդանի քարշող ուժի և տրանսպորտային միջոցների լրիվ օգտագործումը, ստախանովյան շարժման ծավալումը, լավագույն ստախանովականների փորձի տարածումը, բերքահավաքի մեքենաների արտադրողականության բարձրացումը, օպերատիվ ղեկավարությունը վճ-

ռում են բերքահավաքի կամպանիայի հաջողությունը։ Պայքար կորուստների դեմ, հանուն բերքահավաքի բարձր վորակի։ Սոցիալիստական բերքի պահպանումը։ Բերքահավաքի որինակելի կազմակերպումը, գյուղատնտեսական մթերքների հանձնման ասպարիզում պետության հանդեպ ունեցած պարտավորությունների լրիվին ու ժամանակին կատարումը — ՄՏԿ-ների, կոլտնտեսությունների ու խորհտնտեսությունների ղեկավարների, գյուղատնտեսության առաջավորների և բոլոր կոլտնտեսականների ու խորհտնտեսությունների աշխատողների խնդիրն է։ 1938 թվի առատ բերքը և կոլտնտեսականների ունևորության հետագա աճումը։

## 5. 1938 ԹՎԻ ՅԵՐԿՐՈՐԴ ԿԻՍԱՄՅԱԿԻ ՊԼԱՆԻ ԿԱՏԱՐՄԱՆ ԽՆԴԻՐՆԵՐՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՈՒ ՏՐԱՆՍՊՈՐՏԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

ԽՍՀՄ Ժողկոմխորհի վորոշումն արդյունաբերության արտադրանքի 1938 թվի ծրագրի մասին և յերկաթուղիների աշխատանքի մասին։ Վնասարարական բների ջախջախումըն արդյունաբերության մեջ ու տրանսպորտում և նոր տնտեսական կադրերի ա-



ռաջ քաշում։Առաջին կիսամյակի պլանի կատարումն արդյունաբերության և տրանսպորտի բնագավառում։ 1938 թվի յերկրորդ կիսամյակի ծրագրի կատարման պայմաններն են — պայքարն արդյունաբերության մեջ և տրանսպորտում վնասարարության հետևանքների լիկվիդացիայի յենթարկելու համար, աշխատանքի արտադրողականության նոր վերելքը և մասսայական ստախանովյան շարժման ծավալումը։ Պայքար հանուն ինքնարժեքի իջեցման, տնտհաշվարկի արմատացման, արտադրանքի վորակի բարելավման։

## 6. ՊԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԱՊԱՀՈՎԱԳՐՈՒԹՅԱՆ 1938 ԹՎԻ ԲՅՈՒՋԵՅԻ ՄԱՍԻՆ

Պետական սոցիալական ապահովագրությունը ԽՍՀՄ-ում — աշխատավորների առողջության, հանգստի և նյութական բարեկեցության մասին սոցիալիստական պետության հոգատարության արտահայտություն։

ԽՍՀ Միության Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի վորոշումը՝ պետական սոցիալական ապահովագրության 1938 թվի բյուջեի մասին։ Սոցիալական ա-

պահովագրության գծով կատարվող ծախսերը — հանգստյան տների ու սանատորիաների վրա՝ աշխատավորների համար, առողջացուցիչ ճամբարների վրա՝ մանուկների համար, ծննդկանների օգնության ու ծննդաբերության նպաստի վրա: Աշխատավորների պետական սոցիալական ապահովագրության փաստացի բացակայությունը կապիտալիստական յերկրներում:

## 7. ԽՍՀ ՄԻՈՒԹՅԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԻ ՎՈՐՈՇՈՒՄՆ ԱՆԱՍՆԱՊԱՀՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ 1938 ԹՎԻ ՊԵՏԱԿԱՆ ՊԼԱՆԻ ՄԱՍԻՆ

ԽՍՀ Միության Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի վորոշումն անասնապահության զարգացման 1938 թվի պետական պլանի մասին: Ընկեր Ստալինի ցուցումները 17-րդ համագումարում՝ սոցիալիստական անասնապահության զարգացման մասին և այդ ցուցումների իրականացումը: Պայքար հանուն անասունների ցեղի ու մթերատվության բարելավման, անասունների գլխաքանակի ավելացմանը զուգընթաց: Մատղաշի աճեցման և նրա կորստի դեմ պայքարելու



խնդիրը: Անասունների մեռելացման: Անասունների անասնաբուժական-զոոտեխնիկական սպասարկումը բարելավելու անհրաժեշտությունը: Պայքար հանուն սոցիալիստական անասնապահության համար կերի ամուր բազայի ստեղծման (սիլոսացում, մարգագետինների ու արոտատեղիների բարելավում): Անասնապահության ասպարեզում վնասարարության հետևանքների լիկվիդացիայի, մասսայական ստախանովյան շարժման ծավալման, անասնապահության լավագույն ստախանովականների փորձի տարածման ու արմատացման խնդիրները:

## 8. ԿՈԼՏՆՏԵՍԱՅԻՆ ԿՅԱՆՔԻ ՍՏԱԼԻՆՅԱՆ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ ՅԵՎ ՊԱՅՔԱՐ ՆՐԱ ԽԵՂԱԹՅՈՒՐՈՒՄՆԵՐԻ ԴԵՄ

Ստալինյան լոզունգը — «Կոլտնտեսությունները դարձնենք բոլշևիկյան, իսկ բոլոր կոլտնտեսականներին՝ ունևոր» և գյուղատնտեսական արտելի կանոնադրության նշանակությունը: Կանոնադրության խեղաթյուրումների դեմ պայքարելու անհրաժեշտությունը: Կոլտնտեսային յեկամուտների բաշխման մեջ յեղած հակակոլտնտեսային վնասարարական պրակտիկայի լիկվիդա-

